Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 14 ՀՈՒԼԻՍ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78



# ԽՈՐԸ ՊԱՐԶԱԲԱՆԵԼ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը մշակեց կարևոր միջոցառումներ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական պրոգրեսն արագացնելու վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների իրականացման ուղղությամբ։ Պլենումի որոշման մեջ, սովետական ժողովրդին ուղղած բոցավառ դիմումում և ընկեր Ն. Ս. Խրուշչովի ճառի մեջ սահմանված են արդյունաբերության և շինարարության մեջ կոմպլեքսային մեքենայացման արմատավորման, արտադրության ավտոմատացման, հոսքային գծեր մտցնելու, հնացած սարքավորումները, դրոշմոցներն ու գործիքները փոխելու, թողարկվող արտադրանքի որակը բարելավելու և նրա ինքնարժեքն իջեցնելու, քիմիական ու տեքստիլ արդյունաբերության զարգացման բնագավառում մեր ժողովրդի պայքարի պարզ, կոնկրետ խնդիրները։

Վերոհիշյալ հարցերի քննարկումը պլենումում ցույց է տալիս, թե պարտիայի Լենինյան Կենտկոմն ինչպիսի հետևողականությամբ և հաստատակամությամբ է պայքարում սոցիալիստական ինդուստրիայի հետագա հզոր վերելքի, արդյունաբերության և շինարարության մեջ տեխնիկական առաջադիմության համար։

Պլենումի որոշումները վիթխարի նշանակություն ունեն յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարման, մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, սովետական ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու գործում։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների կենսագործման մեջ պատասխանատու դեր է հատկացվում մեր ագիտատորներին։— Մենք,— նշում է ընկեր Խրուշչովը,— պետք է լավ կազմակերպենք մեր պլենումի որոշումների պարզաբանման և կատարման աշխատանքը։

Ագիտատորը քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով պետք է յուրաքանչյուր աշխատավորի գիտակցությանը հասցնի պլենումի նյութերն ու որոշումները, մասսաներին մոբիլիզացնի լուծելու կոմունիս-



տական շինարարության հույակապ խնդիրները։

«Կոմունիստական հասարակության կառուցման համար,— ասել է ընկեր Խրուշչովը պլենումում ունեցած ճառի մեջ,— վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության անշեղ աճը։

Վ. Ի. Լենինը սովորեցրել է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը արմատական խնդիրներից մեկն է, որովհետև առանց դրա վերջնական անցումը կոմունիզմին անհնար է։ Աշխատանքի բարձր արտադրողականության կարելի է հասնել միայն տեխնիկական առաջադիմության բազայի վրա։ Ահա թե ինչու անհրաժեշտ է, որ մենք ամեն կերպ զարգացնենք գիտությունն ու տեխնիկան, լայնորեն մեքենայացնենք և ավտոմատացնենք արտադրությունը, բարձրացնենք աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակը»։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի մեջ պետք է ամբողջ ուժով ընդգծել, որ յոթնամյա պլանի հաջող կենսագործման վճռական պայմանը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական պրոգրեսի իրականացման համար մղվող պայքարն է։

Մեր յոթնամյակը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական պրոգրեսի յոթնամյակ է։ Պլենումը խնդիր դրեց սովետական ժողովրդի ջանքերը կենտրոնացնել տեխնիկական պրոգրեսի խնդիրները արագորեն լուծելու համար։

Հունիսյան պլենումը լուրջ թերություններ բացահայտեց տեխնիկական առաջադիմության կատարելագործման բնագավառում։ Պլենումը նշեց, որ մեքենաների և տեխնոլոգիական պրոցեսների մշակման գործում դեռևս անթույլատրելի դանդաղաշարժություն է նկատվում, նոր տեխնիկայի ստեղծողները չեն հոգում այն մասին, որպեսզի մեքենաները լինեն տնտեսապես շահավետ, հեշտացնեն բանվորի աշխատանքը, բարձրացնեն նրա արտադրողականությունը։ Դեռևս վերացված չէ տեխնիկական կոնսերվատիզմը, արտադրության հին մեթոդներին կառչածությունը, նոր տեխնիկայի ներդրման հետ կապված դժվարությունները հաղթահարել չցանկանալը։

Ագիտատորների խնդիրն է աշխատավորներին պարզաբանել, որ մեր երկրում կան անհրաժեշտ բոլոր պայմանները, արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման նախատեսված ծրագիրը



հաջողությամբ կատարելու համար։ Դրա համար անհրաժեշտ է, որպեսզի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արագացվեն տեխնիկական առաջադիմության տեմպերը, վճռական պայքար մղվի պահպանողականության դեմ, բարելավվի նոր տեխնիկայի արմատավորման աշխատանքի պլանավորումը, բարձրացվի ձեռնարկությունների և կառույցների, գիտական, նախագծային ու կոնստրուկտորական կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունը, ըստ ամենայնի զարգացվի բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և գիտնականների նախաձեռնությունը։

Պլենումը նշեց, որ մեր արդյունաբերությունը հսկայական հնարավորություններ ունի նոր շինարարության համեմատությամբ առավել կարճ ժամկետում և զգալիորեն ավելի քիչ ծախսումներով արտադրանքի թողարկումն ավելացնելու համար։ Զրույցների ժամանակ ունկնդիրներին պետք է պատմել այդ բնագավառում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի հավանությանն արժանացած Վլադիմիրի և Սվերդլովի մարզերի, Մոսկվա քաղաքի, Մոսկվայի և Լենինգրադի, Գորկու, Զապորոժյեի, Դնեպրոպետրովսկի մարզերի

և Բելոռուսական ՍՍՌ-ի աշխատավորների
ցուցաբերած նախաձեռնության մասին, ո-
րոնք պարտավորվել են յոթնամյակը կա-
տարել ժամկետից շուտ արտադրական կա-
րողությունները լավ օգտագործելու, գործող
ձեռնարկությունների վերակառուցման,
սարքավորումները փոխելու և մոդեռնացնե-
լու հաշվին։ Պարտիան տեխնիկական առա-
ջադիմության հիմնական միջոցն է համա-
րում արտադրության կոմպլեքսային մեքե-
նայացումն ու ավտոմատացումը։

Արտադրական պրոցեսների կոմպլեքսա-
յին մեքենայացման ասպարեզում պլենումը
անհետաձգելի խնդիր համարեց արդյունա-
բերության, շինարարության մեջ, տրանս-
պորտում և գյուղատնտեսության մեջ ձեռքի
ծանր աշխատանքի վերացումը։ Առաջին
հերթին կոմպլեքսային մեքենայացման և
ավտոմատացման են ենթարկվելու հիմնա-
կան աշխատատար պրոցեսները լեռնահան-
քային արդյունաբերության, մետալուրգիա-
կան, նավթի ու քիմիական արդյունաբերու-
թյան, մեքենաշինության և շինարարության
մեջ։

Գյուղատնտեսության բնագավառում
պետք է իրագործվի հեռաշար ու տեխնիկա-
կան կուլտուրաների մշակության, նրանց



բերքահավաքի, զտման ու բեռնման կոմպ-
լեքսային մեքենայացում, ինչպես նաև ա-
նասնապահության բոլոր աշխատատար
պրոցեսների մեքենայացում։

Կոմպլեքսային ավտոմատացման ասպա-
րեզում անհրաժեշտ է յուծել արտադրական
առանձին գործառնությունների ավտոմա-
տացումից ամբողջովին ավտոմատացված
տեխնոլոգիական պրոցեսների, ցեխերի ու
ձեռնարկությունների ստեղծմանն անցնելու
խնդիրը՝ առաջին հերթին այն ճյուղերում,
որտեղ ավտոմատացումը ապահովում է
տնտեսական առավելագույն էֆեկտ։

Պլենումը սկզբունքային նոր հիմքի վրա
դրեց բարձրագույն տեխնիկայի յուրացման
և ներդրման բազմաթիվ հարցեր, այն հա-
մարելով մեր ժողովրդատնտեսական պլան-
ների բաղկացուցիչ մասը։ Ստեղծվելու են
անհրաժեշտ նյութական ստիմուլներ, ո-
րոնք կշահագրգռեն արդյունաբերության աշ-
խատողներին ինչպես նոր տեխնիկայի
ստեղծման, այնպես էլ նրա ներդրման գոր-
ծում, միջոցառումներ են նախատեսվել
կարճ ժամկետում տնտեսության մի շարք
ճյուղերում ձեռքի ծանր աշխատանքի վե-
րացման համար և այլն։

Պլենումը մեծ և պատասխանատու խնդիր

դրեց սովետական գիտության առջև։ Պլենումը պահանջեց մեր գիտնականներից ժողովրդական տնտեսությունը զինել տեսական նոր հետազոտություններով, հետևություններով ու հայտնագործություններով, ամեն կերպ արագացնել ժողտնտեսության բոլոր ճյուղերում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորումը, նպաստել յոթնամյա պլանի հաջող կատարմանը։

Ագիտատորների խնդիրն է՝ աշխատավորներին խորապես պարզաբանել կոմունիստական շինարարության ասպարեզում տեխնիկական պրոգրեսի հսկայական նշանակությունը, ծավալել գիտության ու տեխնիկայի նվաճումների պրոպագանդան, դրա համար լայնորեն օգտագործել քաղաքական-մասսայական աշխատանքի բոլոր օղակները և մեթոդները։ Այժմ ավելի քան երբևէ ընդհանուր խոսքերը, ընդհանուր կոչերը ոչինչ չարժեն։ Պետք է հասնել նրան, որ գիտատեխնիկական պրոպագանդան յուրաքանչյուր բանվորի, ինժեներա-տեխնիկական աշխատողի օգնի բարձրացնելու իր գիտելիքները և գործնական որակավորումը, նպաստի տեխնիկական պրոգրեսի արմա-



տավորմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Այդ նպատակով պարտիական կազմակերպությունները պետք է սիստեմատիկաբար կազմակերպեն տեսական գրույցներ, կոնսուլտացիաներ, դասախոսություններ ու զեկուցումներ, այդ գործում մասնակից դարձնելով պարտիական, սովետական ղեկավար աշխատողներին։

Մեր երկրի տեխնիկական պրոգրեսին խորը ծանոթանալու նպատակով, անհրաժեշտ է հաճախակի էքսկուրսիաներ կազմակերպել ֆաբրիկաներն ու գործարանները, շինարարությունները, կազմակերպել հանդիպումներ արտադրության առաջավորների ու նորարարների, գիտության ու տեխնիկայի անվանի մարդկանց հետ։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշումը, Կենտկոմի պլենումի դիմումը Սովետական Միության աշխատավորներին, պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառը ջերմ արձագանք են առաջ բերել կոմունիզմի միլիոնավոր կառուցողների սրտերում։

Երկրի բոլոր կողմերից ամեն օր հաղորդումներ են ստացվում յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու, տեխնիկական առա-

ջադիմության իրականացման համար համա-
ժողովրդական մրցության նոր վերելքի մա-
սին։ Այս օրերին ռեսպուբլիկայի քաղաքնե-
րում, գյուղերում, արդյունաբերական ձեռ-
նարկություններում ու կոլտնտեսություննե-
րում տեղի են ունենում աշխատավորների
բազմամարդ միտինգներ ու ժողովներ, որ-
տեղ քննվում են Կենտկոմի պլենումի որո-
շումները և դիմումը։ Նրանք միահամուռ
հավանություն են տալիս կոմունիզմի միլիո-
նավոր կառուցողների կենսական շահերին
համապատասխանող այդ փաստաթղթերին
և իրենց պատրաստակամությունն են հայտ-
նում անել ամեն ինչ պլենումի որոշումները
կենսագործելու համար։

Երևանի մեքենաշինարարներն ու Լենինա-
կանի տեքստիլագործները, Կիրովականի
քիմիագործներն ու Արթիկի տուֆագործները,
էջմիածնի բամբակագործներն ու Շամշադի-
նի ծխախոտագործները, Արտաշատի այգե-
գործներն ու Եղեգնաձորի անասնապահները
ոգեշնչված պլենումի որոշումներով, վերա-
նայում են իրենց առաջադրանքներն ու
պարտավորությունները, նոր ավելի կարճ
ժամկետներ են սահմանում յոթնամյա պլա-
նը կատարելու համար։

Ագիտատորները պետք է կոնկրետ, գոր-



ծարար կերպով ցույց տան յուրաքանչյուր
կոլեկտիվի կողմից յոթնամյա պլանը ժամ-
կետից շուտ կատարելու, տեխնիկական ա-
ռաջադիմության համար ծավալված համա-
ժողովրդական սոցիալիստական մրցության
լայն թափը, պատմեն յոթնամյակի առաջա-
վորների ազնիվ աշխատանքի և գործերի
մասին, վճռական պայքար մղեն լճացածու-
թյան, նոր տեխնիկայի և նորարարների
փորձի նկատմամբ արհամարհական վերա-
բերմունքի դրսևորումների դեմ, պաշտպա-
նեն ու տարածեն նորը, առաջավորը։

Հունիսյան պլենումի որոշումները աշխա-
տավորների բարեկեցության նկատմամբ
Կոմունիստական պարտիայի հոգատարու-
թյան մի նոր փայլուն արտահայտությունն
է։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքի
մեջ կարմիր թելի նման պետք է անցնի այն
միտքը, որ մեր պարտիան անում է ամեն
ինչ, որպեսզի ավելի լավ բավարարվեն քա-
ղաքի ու գյուղի աշխատավորների նյութա-
կան և կուլտուրական աճած պահանջմունք-
ները, որպեսզի սովետական մարդիկ լի ու լի
ապահովված լինեն սննդամթերքներով, հա-
գուստներով, կոշկեղենով և ժողովրդական
սպառման մյուս ապրանքներով, որպեսզի
արագորեն վերջ տրվի բնակարանների պա-

կային և սովետական յուրաքանչյուր ընտանիք ապահովվի բարեկարգ բնակարանով, որպեսզի շուտով մտցնենք աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը, որպեսզի սովետական մարդիկ ավելի շատ ժամանակ ունենան ուսման ու հանգստի համար։

Սովետական ժողովուրդը այդ հոգատարությանը պատասխանում է աշխատանքային նորանոր հաջողություններով, լարում է բոլոր ուժերը պարտիայի կանխագծումները պատվով կատարելու համար, ամեն օր, ամեն ժամ մոտեցնելով մեր կոմունիստական պայծառ վաղը։ Սովետական մարդկանց սրտերը ջերմությամբ են լցրել Հունիսյան պլենումի դիմումի բոցաշունչ խոսքերը։

«Ինչպես ներքին վիթխարի գոհունակություն չապրես, գիտակցելով, որ ընդհանուր հաղթանակներում կա նաև քո մասը, որ կյանքում ոչ թե հյուրի նման, այլ լիիշխան տիրոջ պես ես քայլում դու՝ Սովետական Միության քաղաքացիդ՝ և այն ամենը, ինչ տեսնում ես շուրջդ և այն ամենը, ինչ արվելու է՝ քեզ համար է, քո երեխաների համար, մեր բոլորիս համար, սովետական հասարակության՝ կոմունիզմ կառուցողների հասարակության համար, մեր Հայրենիքի համար»։

---

# ՇԻՆԱՐԱՐԻ ՕՐԸ

Լ. ԵՐԶԻՆԿՅԱՆ

Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի նախագահի տեղակալ

*1959 թվականի օգոստոսի 9-ին շինարարական կազմակերպությունների, շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունների, նախագծային և գիտա-հետազոտական կազմակերպությունների բանվորները, ծառայողները, ինժեներա-տեխնիկական աշխատողները օրինական հպարտության բարձր զգացումով տոնելու են իրենց տոնը՝ «Շինարարների օրը»։ Շինարարի օրը լայնորեն նշելու են նաև մեր երկրի բոլոր աշխատավորները։*

*Ընթացիկ տարում շինարարների օրվա տոնակատարությունը տեղի է ունենում քաղաքական և աշխատանքային հսկայական վերելքի իրադրության մեջ, կապված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատմական ո-*

րոշումների հետ, համագումար, որը պատմության մեջ մտավ որպես մեր ժամանակի ամենախոշոր երևույթը։

Սովետական Միության շինանյութերի արդյունաբերության աշխատողները և բոլոր կառուցող բանվորները յոթնամյա պլանը ընդունեցին որպես իրենց հարազատ գործը։ Նրանք համառ և բեղմնավոր աշխատանք են կատարում իրագործելու համագումարի կողմից նախատեսված կոմունիստական հասարակության ծավալուն շինարարության հոյակապ ծրագիրը։

Համագումարի կողմից ընդունված մեր Հայրենիքի զարգացման յոթնամյա պլանում հստակորեն արտացոլված է Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականությունը, որը լայն հնարավորություններ է ստեղծում Սովետական Միության բոլոր եղբայրական ռեսպուբլիկաների տնտեսության և կուլտուրայի բազմակողմանի զարգացման համար։

Այդ պլանի հսկայական մասշտաբների մասին վկայում է այն փաստը, որ 1965 թվականին Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է 1,8 անգամ։



Այս յոթնամյակում հսկայական միջոցներ են ներդրվում արդյունաբերության, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության գծով։

Մեծ զարգացում է ստանալու Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսությունը։ Յոթնամյա պլանով նախատեսված կապիտալ ներդրումները հնարավորություն կտան գործողության մեջ դնելու մեծ քանակությամբ նոր հզորություններ, որն էլ ավելի կընդլայնի ռեսպուբլիկայի արտադրական բազան։

Հայկական ՍՍՌ-ում, յոթնամյակի տարիներին կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը հասնելու է պատկառելի թվերի՝ 12,7 միլիարդ ռուբլու, որը նշանակալիորեն բարձր է Հայաստանում Սովետական իշխանության բոլոր տարիների ընթացքում ներդրված կապիտալ ներդրումներից։ Այդ գումարից ավելի քան 8 միլիարդ ռուբլի ներդրվում է արդյունաբերական շինարարության և 3 միլիարդ ռուբլի՝ բնակարանային շինարարության մեջ։ Առողջապահական, կուլտուրական և լուսավորական օբյեկտների շինարարության կապիտալ ներդրումները հասնում է ավելի քան 1 միլիարդ ռուբլու։

Հայաստանի շինարարների մեծաքանակ բանակի առջև լուրջ և պատվավոր խնդիր

է դրված ժամանակին և որակական բարձր ցուցանիշներով կատարելու պլանավորված օբյեկտների շինարարությունը։

Շինարարների կարևորագույն խնդիրն է կենսագործել պարտիայի և կառավարության կողմից առաջադրված համաժողովրդական խնդիրը, այն է՝ 10—12 տարվա ընթացքում վերացնել բնակարանային պակասը մեր երկրում։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության համար չկա այլ ավելի բարձր նպատակ, քան հոգատարությունը ժողովրդի բարեկեցության և երջանկության նկատմամբ։ Այդ նպատակով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյակի կոնտրոլ թվերում նախատեսված է քաղաքներում և բանվորական ավաններում պետական կապիտալ ներդրումների և պետական վարկի օգնությամբ՝ բնակչության միջոցների հաշվին կառուցել 600—650 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, կամ մոտ 15 միլիոն բնակարան, որը 2,3 անգամ ավելի է, քան կառուցվել է անցած հնգամյակներում։ Գյուղական վայրերում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով կառուցվելու է մոտ 7 միլիոն բնակելի տուն։



Յոթնամյա պլանով Հայկական ՍՍՌ-ում նախատեսված է կառուցել 2 միլիոն 328 հազար քառ. մետր բնակելի տարածություն։

Զգտելով աշխատավորության կենցաղային պայմանների, նրանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների լրիվ բավարարման, պարտիան և կառավարությունը շինարարների ու նախագծողների առջև խնդիր են դնում ակտիվ մասնակցություն ցույց տալ բնակչության բնակարանային շինարարության գործում։

Հայաստանի շինարարները անվիճելիորեն իրենց բոլոր ուժերը կգործադրեն, որպեսզի տասնյակ հազարավոր բանվոր-ծառայողների ընտանիքներ կարողանան ստանալ նոր, բարեկարգ բնակարաններ։

Խոշոր կապիտալ ներդրումներ են կատարվելու արդյունաբերական շինարարության մեջ։ Պլանավորվում է կառուցել նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, իսկ հները վերակառուցել և ընդլայնել։

Հայաստանում մեծ զարգացում է ապրելու քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, գործիքաշինությունը, լեռնահանքային, մեքենաշինական, էլեկտրատեխնիկական և ծանր արդյունաբերության այլ ճյուղերը։



Զարգացման բարձր տեմպեր են նախատեսվում քիմիական արդյունաբերության գծով։ Կկառուցվեն նոր գործարաններ ու ցեխեր մի շարք կարևորագույն սինթետիկ նյութերի արտադրման համար, ինչպես նաև կընդարձակվեն գործող ձեռնարկությունները։

Յոթնամյակում քիմիական արդյունաբերության կապիտալ ներդրումների ծավալը կազմում է 1 միլիարդ 200 միլիոն ռուբլի, որը կապահովի քիմիական արդյունաբերության աճը Հայաստանում գրեթե 3 անգամ։ Ի թիվս քիմիական արդյունաբերության մի շարք այլ ձեռնարկությունների Կիրովականում կկառուցվի և շահագործման կհանձնվի ացետատային մետաքսի գործարանը, որի արտադրանքը վերամշակվելու է ռեսպուբլիկայի ձեռնարկություններում։

Հրազդանի շրջանում կառուցվելու է արհեստական մանրաթելի՝ կապրոնի արտադրության խոշոր կոմբինատ։ Յոթնամյակում նմանապես մեծ զարգացում է ստանալու մեքենաշինական և դազգաշինական արդյունաբերությունը։ Նախատեսված նորակառույց դազգահաշինական ձեռնարկություններ գործի են դրվելու՝ ֆրեզերային հաստոցների գործարանը Երևանում, հղկող



հաստոցների գործարանը՝ Լենինականում, Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանը և Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանը։

Հայաստանի Ժողտնտխորհի հաստոցաշինական ձեռնարկությունների կողմից թողարկվող հաստոցների թիվը 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականին ավելանալու է համարյա 7 անգամ։

Յոթնամյակում լայն զարգացում կստանա շինանյութերի արդյունաբերությունը։ Շինարարական աշխատանքների այս հսկայական ծավալը պահանջում է շինանյութերի, կոնստրուկցիաների և մասերի արտադրության նշանակալից զարգացում։ Մեր ռեսպուբլիկայի ընդերքը հարուստ է տուֆով, բազալտով, պեմզայով և այլ արժեքավոր շինանյութերով։ Եթե լայնորեն կազմակերպվի դրանց հանույթը, ապա ռեսպուբլիկան շինանյութերով ոչ միայն լրիվին կապահովի իրեն, այլև կարող է այն ուղարկել Սովետական Միության ուրիշ շատ շրջաններ։ Շինանյութերի նկատմամբ ռեսպուբլիկայի պահանջները լրիվին բավարարելու նպատակով ՀԿՊ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը ծավալուն որոշում են ընդունել «Հայկական ՍՍՌ-ում 1959—1965

թվականներին շինանյութերի արդյունաբերությունը և շինարարական ինդուստրիան զարգացնելու մասին» որտեղ նախատեսված է շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության արագ զարգացում։

Խոշոր կապիտալ ներդրումներ են կատարվելու նաև էներգետիկ շինարարության մեջ։ Բավական է նշել, որ յոթնամյակում կապիտալ շինարարության ծավալը մեկ միլիարդ ռուբլուց ավելի է։

Ծանր արդյունաբերության զարգացման հետ միասին նշանակալից կերպով կաճեն նաև թեթև, սննդի, կաթի, մսի և փայտամշակման արդյունաբերությունը։ Նախատեսվում է թեթև արդյունաբերության գծով կառուցել և գործարկման ենթարկել շատ նոր ձեռնարկություններ, որոնց թվում՝ Իջևանի գորգերի կոմբինատը՝ 500 հազար քառ. մետր արտադրությամբ, Դիլիջանի տրիկոտաժի ֆաբրիկան՝ տարեկան 40 միլիոն հատ սպիտակեղեն արտադրելու հզորությամբ, Երևանի տրիկոտաժե ձեռնոցների ֆաբրիկան՝ 7 միլիոն զույգ արտադրական հզորությամբ։ Աճելու է մսի և կաթի արդյունաբերությունը։ Նոր օբյեկտների շինարարության և գործող ձեռնարկությունների ընդարձակման



հաշվին զգալի չափով ավելանալու է մսի և կաթի վերամշակումը։

Այդ ժամանակաշրջանում կառուցվելու և շահագործման են հանձնվելու փայտամշակման արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ՝ Երևանի նոր ֆաբրիկան, որը թողարկելու է 30 միլիոն ռուբլու արժողությամբ կահույք, փայտա-թելիկային սալիկների արտադրության ֆաբրիկան տարեկան 12 հազար խորանարդ մետր արտադրությամբ և այլն։

Այս խնդիրների հաջող կատարումը հնարավոր է միայն շինարարության մշտական տեխնիկական առաջադիմության և հետագա ինդուստրացման բազայի հիման վրա։ Շինարարական ինդուստրիայի բոլոր աշխատողների հիմնական խնդիրը ամենից առաջ այն է, որ արագացվի տեխնիկական առաջադիմությունը շինարարության մեջ, զարկ տրվի գիտության ու տեխնիկայի արմատավորմանը, կատարելագործվեն շենքերի և կառույցների նախագծումները, ամեն կերպ ամրապնդվեն շինարարության արտադրական բազան և արագորեն ներդրվեն նոր էֆեկտիվ նյութերն ու կոնստրուկցիաները։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի կողմից քննարկված տեխնիկական առաջա-

դիմության, կոմպլեքսային մեքենայացման, արդյունաբերության և շինարարության մեջ արտադրական պրոցեսների ավտոմատացման վերաբերյալ հարցերը ընդգծում է այդ ձեռնարկումների հատուկ կարևորությունը շինարարության հետագա ինդուստրացման, նրա որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման համար։

Անվիճելի է, որ շինարարների ամբողջ ջանքերը պետք է ուղղվեն այդ կարևորագույն խնդիրները լուծելու համար։ Մեծ և լուսավոր ճանապարհ են անցել սովետական շինարարները։ Շինարարների հերոսական աշխատանքները բարձր է գնահատվում սովետական ժողովրդի կողմից։

Պատշաճը հատուցելով շինարարներին, Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը դրա հետ մեկտեղ նշում են գոյություն ունեցող թերությունները, որոնց վերացումը շինարարների անհետաձգելի և կարևորագույն խնդիրն է։

Շինարարության աշխատողները պարտիայի և կառավարության հոգատարությանը որպես պատասխան, չեն խնայի իրենց ուժերը հաջողությամբ կատարելու պարտիայի նախագծումները։

---



# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԺԱՄԱՆԱԿԻՆ ՈՒ ԱՆԿՈՐՈՒՍՏ

Պ. ԱՄԻՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության երկրագործական գլխավոր վարչության պետ

Ռեսպուբլիկայի ցածրադիր շրջաններում արդեն սկսվել է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը։ Մի քանի օրից հետո այն կսկսվի նախալեռնային և աստիճանաբար նաև լեռնային շրջաններում։ Արտաշատի, Եղեգնաձորի, Վեդու, Էջմիածնի Նոյեմբերյանի և ցածրադիր մյուս շրջանների դաշտերն են դուրս եկել բազմաթիվ կոմբայններ ու գյուղատնտեսական այլ մեքենաներ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու համար։ Բերքահավաքը գյուղատնտեսական աշխատանքների մեջ իրավամբ համարվում է ամենապատասխանատու և ամենաանհետաձգելի գործը, որով հանրագումարի է բերվում կոլտնտեսու-

*թյունների և սովխոզների ամբողջ տարվա կատարած աշխատանքի արդյունքը։*

*Հացահատիկի բերքահավաքը պետք է սկսել հասունության այնպիսի շրջանում, երբ հատիկի մեջ ավարտված լինի սնընդանյութերի կուտակումը։ Հայտնի է, որ բերքահավաքը ուշացնելու դեպքում նախ իջնում է հատիկի որակը, ապա բերքի կորուստ է տեղի ունենում։*

*Հացահատիկային կուլտուրաները անցնում են հասունացման 3 շրջան։ Հասունացման շրջանները որոշում են ելնելով դաշտի արտաքին տեսքից, օրինակ, կաթնային հասունացման ժամանակ դաշտը ունենում է դեռ կանաչ գույն և հատիկը իր մեջ պարունակում է կաթնանման հեղուկ, իսկ բույսի ցողունի ներքևի տերևները լինում են դեղին գույնի։ Կաթնային հասունության ժամանակ չի կարելի դաշտը հնձել, որովհետև այդ շրջանում հատիկի մեջ դեռ նոր պաշարներ են կուտակվում։ Բացի այդ կաթնային շրջանում հնձած հատիկը չորանալիս տալիս է ոչ ծլունակ հատիկ։*

*Մոմային հասունացման ժամանակ դաշտը ստանում է դեղին գույն, հատիկը նույնպես դեղնում է և պնդանում, բայց դեռ հեշտ կերպով կարելի է եղունգով նրան կտրա-*



*տել։ Այդ շրջանում, մանավանդ նրա հասունության վերջին շրջանում, հատիկը նոր նյութ չի կուտակում, չի թափվում և պիտանի է ինչպես պարենի, այնպես էլ սերմացուի համար։ Այդ հատիկը շարունակում է իր հասունացումը նաև խրձի մեջ։*

*Լրիվ հասունության ժամանակ ամբողջ դաշտը դեղնում է, հատիկը չորանում այնքան ամուր, որ եղունգով չի կարելի կտրել։ Լրիվ հասունության շրջանում հատիկները պոկվում են թեփուկների արանքից և թափվում, հասկերը կոտրվում են, ընկնում ու տեղիք տալիս մեծ կորուստների։ Այսպիսով հացահատիկի բերքահավաքը պետք է կատարել մոմային հասունության շրջանի վերջին օրերին, որպեսզի կանխվեն կորուստները։ Մանավանդ շուտ թափվող տեսակների բերքահավաքը, ինչպիսին է «Ուկրաինկան», որը տարածված է ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում, դելֆինը (գալգալոս), որը մշակվում է Հրազդանի, Արթիկի, Աղինի և մի քանի այլ շրջաններում, պետք է ճիշտ ժամանակին կատարել։*

*Մեր կոլտնտեսությունների պրակտիկայից պարզվել է, որ հացահատիկի դաշտերի բոլոր հատվածները միաժամանակ չեն հասունանում, միշտ էլ դաշտի մի մասը շուտ*

է հասունանում, իսկ մյուս հատվածը՝ մի քանի օրով ավելի ուշ։ Ուստի չպետք է սպասել ամբողջ դաշտի լրիվ հասունացմանը, այլ պետք է հունձը սկսել ընտրովի կարգով։

Հացահատիկի բերքահավաքի ամենահուսալի մեքենան կոմբայնն է։ Հմտորեն կազմակերպված կոմբայնային բերքահավաքը հանդիսանում է հացահատիկների արագ և անկորուստ հավաքման լավագույն միջոցը։ Սակայն այդ այն դեպքում, երբ կոմբայնը գտնվում է սարքին վիճակում և նրան ղեկավարում է փորձված, գործին տիրապետող մեխանիզատոր։ Որքան բարձր է կոմբայնավարի տեխնիկական պատրաստականությունը և կազմակերպչական ունակությունը—այնքան մեծ է լինում կոմբայնի արտադրողականությունը։

Վեդու շրջանի Ավշար գյուղի կոլտնտեսության մեխանիզատորները ներկայումս Ս—6 կոմբայնով օրական կատարում են 12—13 հեկտար հացահատիկի բերքահավաք, գերակատարելով օրվա առաջադրանքը 125 տոկոսով։ Այդ նույն օրինակին են հետևում Արտաշատի շրջանի Արևշատ ու Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունների առաջավոր կոմբայնավարնե-



րը։ Նրանք բերքահավաքի առաջադրանքները կատարում են շնորհիվ այն բանի, որ բերքահավաքից առաջ կոմբայնավարները իրենք անձամբ են մասնակցել կոմբայնի վերանորոգմանը և կոմբայնը ապահովել են պահանջվող հարմարանքներով ու գործիքներով։

Լավ գիտակցելով կոմբայնի դերը բերքահավաքի գործում Հոկտեմբերյանի, Ալավերդու, Իջևանի շրջանների առաջավոր տնտեսությունները վերանորոգել են դրանք և կազմ ու պատրաստ սպասում են բերքահավաքին։ Սակայն այլ է դրությունը Ախուրյանի, Աղինի, Ազիզբեկովի, Ապարանի, Բասարգեչարի, Կրասնոսելսկի և մի քանի այլ շրջաններում, որտեղ հուլիսի 1-ի դրությամբ վերանորոգվել է եղած կոմբայնների միայն $^{1}/_{3}$ մասը։

Բերքը անկորուստ հավաքելու գործում վճռական նշանակություն ունի անջատ բերքահավաքը, որի հիմնական առավելությունն այն է, որ այն թույլ է տալիս բերքահավաքը կատարել հատիկների մոմային հասունության շրջանում և այդպիսով բերքահավաքի համար շահել 5—6 օր։ Այդ ժամանակ հատիկը չի թափվում և հատիկի որակը լինում է բարձր։

Գործնականում պարզված է, որ անջատ եղանակով կատարվող բերքահավաքի ժամանակ կորուստը խիստ կրճատվում է և տնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից 2—3 ցենտներ բերք է շահում։

Բերքը անկորուստ հավաքելու գործում խոշոր դեր ունեն կատարելու կոմբայնային ագրեգատները սպասարկող անձնակազմերը։ Մեր կոլտնտեսությունների նախագահների և ՆՏ կայանների դիրեկտորների անհետաձգելի գործն է՝ բերքահավաքին մասնակից դարձնել արտադրության մեջ փորձված, աշխատանքում իրենց արդարացրած կոմբայնավարների, տրակտորիստների, մեքենավարների և ուրիշ մեխանիզատորների։

Ռեսպուբլիկայի առաջավոր կոմբայնավարները գործնականում ապացուցել են, որ աշխատանքի ժամանակ կոմբայնների ամենօրյա տեխնիկական խնամքը վճռական նշանակություն ունի կոմբայնի անխափան և բարձր արտադրողականությամբ աշխատելու գործում։ Նրանք ամեն օր մաքրում են իրենց կոմբայնները և արագ վերացնում նկատված թերությունները։

Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր, Էջմիածնի շրջանի Լենինի անվան, Հրազդանի շրջանի Ցանատան, Բասարգեչարի շրջանի



Նորակերտ գյուղերի կոլտնտեսությունները խոշոր նշանակություն են տալիս բերքահավաքը հաջող կազմակերպելու նպատակով նախօրոք կազմված օրացուցային պլանին։ Նրանք եկել են այն համոզման, որ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու համար անհրաժեշտ են ոչ միայն սարքին մեքենաներ ու գործիքներ, աշխատող ձեռքեր և տրանսպորտ, այլև դրանք ճիշտ, արդյունավետ օգտագործելու հմտություն։ Փորձը ցույց է տվել, որ այն կոլտնտեսությունները և սովխոզները, որոնք նախօրոք պլանավորել են բերքահավաքի աշխատանքները, նրանք համեմատաբար ավելի քիչ բանվորական ուժի և մեքենաների առկայությամբ կարողանում են բերքը հավաքել ավելի սեղմ ժամկետում և առանց կորստի։

Ունենալով աշխատանքի հարուստ փորձ և բավարար քանակությամբ բերքահավաքի մեքենաներ ու գործիքներ, մեր կոլտնտեսականները պատվով կկատարեն ստանձնած պարտավորությունները և ժամանակին ու անկորուստ կհավաքեն 7-ամյակի առաջին տարվա առատ բերքը։

---

# ԱՐԵՆՑԻՆԵՐԸ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՇԱՐՔԵՐՈՒՄ

**Ա. ՍԱՐԳՍՅԱՆ**

*Արենիի կոլտնտեսությունը Եղեգնաձորի առաջավոր կոլտնտեսություններից է։ Անշեղորեն կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ, արենցիները խոշոր հաջողությունների են հասել։ Եթե 1953 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտները հազիվ մեկ միլիոն ռուբլու էին հասնում, ապա 1958 թվականին այն հասավ 2,3 միլիոնի։ Այժմ կոլտնտեսությունը զգալիորեն ավելի գյուղատնտեսական մթերք է արտադրում, քան հինգ տարի առաջ։ Կոլտնտեսությունում 1953 թվականին 100 հեկտար հողատարածության հաշվով դրամական եկամուտը կազմում էր մոտ 120 հազար ռուբլի, իսկ այժմ այն հասել է 195 հազար ռուբլու։ Անբաժանելի ֆոնդը 600 հազարից հասել է 1,5 միլիոն ռուբլու։ Միայն անցյալ տարի կատարվել է 1,2 միլիոն ռուբլու կապիտալ*



*ներդրում, այսինքն՝ 4,5 անգամ ավելի, քան ներդրվել էր 1953 թվականին։*

*ՍՄԿՊ XXI համագումարից հետո հաշվի առնելով իրենց հնարավորությունները կոլտնտեսականները որոշեցին դրամական եկամուտները 2,3 միլիոն ռուբլուց 1965 թվականին հասցնել 4—4,5 միլիոն ռուբլու։*

*Արենցիները հմուտ ու փորձված ծխախոտագործներ են, ծխախոտի մշակության իսկական վարպետներ։ Աշնիվ ու քրտնաջան աշխատանքի համար բազմաթիվ կոլտնտեսականներ պարգևատրվել են կառավարական շքանշաններով ու մեդալներով, ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի Պատվոգրերով, իսկ 4 մարդ արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։*

*Շրջանում կատակով ասում են՝ արենցիները բերքատվությունը բարձրացնելու սահման չճանաչող մարդիկ են։ Կար ժամանակ, որ նրանք պայքարում էին հեկտարից 11—13 ցենտներ հումք ստանալու համար։ Նրանք հասան դրան։ Բայց ձեռք բերածը նրանց չէր գոհացնում։ Եվ արդեն մի քանի տարի է, ինչ այդ արժեքավոր կուլտուրայի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսությունը ստանում է 20 ցենտներ։*

Անցյալ տարի ամփոփելով իրենց աշխատանքի նախորդ տարվա արդյունքները, արենցիները պարտավորվեցին հեկտարից ստանալ 20 ցենտներ բերք։ Դյուրին չէր կատարել այդ պարտավորությունը, մանավանդ, որ հենց տարվա սկզբից եղանակն անբարենպաստ էր, քիչ էին մթնոլորտային տեղումները, սակայն լավ մշակությամբ կոլտնտեսականները հաղթանակով դուրս եկան մրցությունից։ Դեռևս աշնանը նրանք մեքենաներով կատարել են խոր ցրտահերկ և պարարտացրել ծխախոտի ցանքի տակ գտնվող դաշտերը։ Անցյալ տարիների համեմատ, գարնանը ծխախոտագործներն ավելի խնամքով ձեռնամուխ եղան սածիլների մշակությանը։ Նրանք ջերմոցներում աճեցրին առողջ ու փարթամ սածիլներ, սեղմ ժամկետում ավարտեցին սածիլումը։ Հաջող կազմակերպելով պլանտացիաների մշակությունը և տերևաքաղը, մինչև ցրտերն ընկնելը լրիվ հավաքվեց ծխախոտի հումքը։ 27 հեկտար պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվեց 20,70 ցենտներ ծխախոտի հումք։

Արենցիները այս տարի պայքարի են ելել հեկտարից 25 ցենտներ ծխախոտի հումք ստանալու համար։ Նախատեսված է առա-



ջիկա յոթնամյակում ծխախոտագործությունից ստացվող եկամուտը հասցնել 2 միլիոն ռուբլու, 1958 թվականի մեկ միլիոնի դիմաց։

Եգիպտացորենը Արենիում նոր կուլտուրա է։ Մի քանի տարի առաջ շատերը տարակուսում էին եգիպտացորենի բերքատու լինելու մասին։

Անցյալ տարի կոլտնտեսությունը մշակեց 15 հեկտար եգիպտացորեն և յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ 155 ցենտներ կանաչ մասսա։ Ինչ խոսք, որ բերքատվության այդ քանակն այս տարի կկրկնապատկվի և կոլտնտեսությունը ամեն մի կովի համար 9—10 տոննա սիլոս կպատրաստի։ Յոթնամյակի վերջում կրկնապատկվելու է եգիպտացորենի ցանքատարածությունը։ Նախատեսվում է հեկտարից ստանալ 30 ցենտներ կողրեր և 300 ցենտներ կանաչ մասսա։

Նոր յոթնամյակում Արենիի կոլտնտեսությունում ծխախոտի հետ միասին լայն հեռանկարներ են բացվում այգեգործության զարգացման համար։ Ծխախոտի հետ մեկտեղ այգեգործությունը դառնալու է տնտեսության առաջատար ու եկամտաբեր ճյուղը։

Վերջին 3—4 տարիներին գցվել են նոր այգիներ, շարունակվում է այդ գործը նաև

այժմ։ Կոլտնտեսությունն ունի սեփական տնկարան, որտեղ աճեցնում է արմատակալներ և այն այգիները տեղափոխում։ 1953 թվականի համեմատությամբ 1,5 անգամ ավելացել են պտղատու այգիների և համարյա կրկնապատկվել խաղողի այգիների տարածությունները։ Այժմ կոլտնտեսությունն ունի 7 հեկտար պտղատու և 32 հեկտար խաղողի այգի, որից 29 հեկտարը բերքատու։ Արենիի քաղցրահամ և բարձրորակ խաղողը լավ հումք է «Արենի» տեսակի գինու արտադրության համար։ Կոլտնտեսականները պարտավորվել են հեկտարից ստանալ 100 ցենտներ խաղող։

Այգեգործությունից ստացված ընդհանուր դրամական եկամուտն արդեն անցյալ տարի հասավ 900 հազար ռուբլու, այսինքն՝ 1953 թվականի համեմատությամբ եկամուտներն ավելացան 2,5 անգամ։

Նախատեսված է մինչև 1965 թվականը խաղողի այգիների տարածությունը հասցնել 41 հեկտարի, իսկ պտղատու այգիներինը՝ 11 հեկտարի։ Զգալիորեն բարձրանալու է բերքատվությունը։ Կառուցվելու է նոր ջրամբար և դրվելու են նոր ջրմուղներ, իսկ այս տարի արդեն դրվել են 2 ջրմուղ։ Յոթնամյակի վերջում կոլտնտեսությունը այգեգործու-



թյունից կստանա մոտ 2,5 միլիոն ռուբլու եկամուտ։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերված անասնաբուծության բնագավառում։ Մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը 1953 թվականին եղած 650 լիտրից այժմ հասել է 1470 լիտրի։ Անցյալ տարի մեկ ոչխարից խուզվեց 2,4 կիլոգրամ բուրդ, մեկ հավից ստացվեց 65 հատ ձու։ 1953 թվականի համեմատությամբ բրդի համախառն արտադրանքն ավելացել է մոտ 1,4 անգամ։ Եթե 1955 թվականին 100 հեկտար վարելահողի հաշվով արտադրվել էր 19 ցենտներ միս, ապա անցյալ տարի այն հասավ 29 ցենտների։

Սակայն անասնաբուծությունը մնում է այս առաջավոր կոլտնտեսության նեղ տեղը և անասնապահական մթերքների արտադրանքով նա խիստ ետ է մնում։

Անասնաբուծության զարգացման բնագավառում կերի պակասը լուրջ խոչընդոտ է։ Կոլտնտեսականները որոշել են առաջիկա յոթնամյակում լուծել այդ հարցը։ Հեռանկարային պլանով, որն արդեն մտել է գործողության մեջ, նախատեսվում է սեփական արտադրանքի միջոցով անասուններին լի ու լի բավարարել կերով, մասնավորապես

հյուծալի կերով, դրա համար առաջիկա տարիներին ընդարձակվելու են եգիպտացորենի, ցանովի խոտաբույսերի, արմատապտուղների ցանքատարածությունները, մեծ չափով ավելանալու է նրանց բերքատվությունը, անասունների կերի համար առանձնացվելու է մեծ քանակությամբ հացահատիկ։

Հանրային տնտեսության անշեղ աճման, նրա եկամուտների ավելացման հիման վրա բարձրանում է կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Վերջին հինգ տարում ավելացել են աշխատավորների եկամուտները։ Բավական է նշել, որ մեկ աշխօրին տրված դրամական վարձատրությունը ավելացել է մոտ 1,5 անգամ։

Գյուղում ծավալվում է բնակարանային շինարարությունը։ Կոլտնտեսականներն իրենց միջոցներով և կոլտնտեսության օգնությամբ կառուցում են հարմարավետ բնակարաններ։

Կոլտնտեսությունն ունի հիվանդանոց, ծննդատուն, փոստի բաժանմունք։ Կոլտնտեսության միջոցներով կառուցվել է կուլտուրայի տուն։ Ամեն օր գյուղում ցուցադրվում է կինոնկար։ Գյուղն ապահովված է խմելու ջրով, կառուցվել են 2 աղբյուր-հուշարձան։

---



# ԿՈՐԵԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

(Ճապոնական իմպերիալիզմի լծից Կորեայի ազատագրման 14-րդ տարեդարձի առթիվ)

1945 թվականի օգոստոսի 15-ը նշանակալից օր է Կորեական ժողովրդի կյանքում։ Սրանից 14 տարի առաջ այդ օրը կորեական ժողովրդա-ազատագրական բանակը, Սովետական Բանակի անմիջական մասնակցությամբ և օգնությամբ ազատագրեց Կորեան ճապոնական իմպերիալիզմի ծանր լծից։ Այդպիսով ստեղծագործ աշխատանքի ու պայքարի նոր էրա բացվեց կորեական ազատաբաղձ և աշխատասեր ժողովրդի համար։

Հյուսիսային Կորեայի ժողովրդական լայն մասսաները Կորեայի Աշխատանքային պարտիայի ղեկավարությամբ երկրում հաստատեցին ժողովրդական իշխանություն, անցկացրին դեմոկրատական վերակառու-

ցում և ստեղծեցին Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան (ԿԺԴՌ), որը հաջողությամբ ընթանում է սոցիալիզմի ճանապարհով։

1950—1953 թթ. կորեական ժողովուրդը և նրան օգնության եկած չինական կամավորները հերոսական պայքար մղեցին ամերիկյան բռնադատիչների դեմ, որոնք համագործակցելով Հարավային Կորեայի կալվածատերերի և կապիտալիստական բուրժուազիայի հետ ձգտում էին գրավել Հյուսիսային Կորեան և նորից նրա ուսին դնել շահագործողների լուծը։ Պատերազմը շատ զրկանքներ ու տառապանքներ բերեց կորեական աշխատավոր ժողովրդին, սակայն նա հերոսաբար դիմացավ բոլոր փորձություններին և հաղթանակով դուրս եկավ այդ պատերազմից։

Ետպատերազմյան ժամանակաշրջանում ԿԺԴՌ-ի աշխատավորները անդուլ աշխատանք ծավալեցին ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման եռամյա պլանը (1954—1956 թթ.) ժամկետից շուտ կատարելու համար, որը կարևոր քայլ հանդիսացավ սոցիալիզմի հիմքերը կառուցելու ճանապարհին։ Այժմ նրանք հաջողությամբ կենսագործում են առաջին հնգամյա



պլանի (1957—1961 թթ.) առաջադրված խնդիրները։

Կորեական ժողովրդին իր ստեղծագործ աշխատանքում անշահախնդիր ու բարեկամական օգնություն են ցույց տալիս Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և սոցիալիստական լագերի բոլոր երկրները։ Գնալով աճում ու ծավալվում են կորեական ժողովրդի ռևոլյուցիոն ուժերը, ժողովուրդ, որը պայքարում է հանուն իր հայրենիքի խաղաղ միավորման, հանուն սոցիալիզմի։

Խոսելով Սովետական Բանակի ազատագրական մեծ միսիայի մասին, ընկ. Կիմ Իր Սենը գրում է.

«Սովետական Բանակի կողմից Կորեայի ազատագրումը նոր դարաշրջան բացեց մեր երկրի պատմության մեջ։ Մեր ժողովրդի համար ազգային անկախության և դեմոկրատական զարգացման լայն ճանապարհ բացվեց»։

Կորեայի բնակչությունը կազմում է ավելի քան 30 միլիոն մարդ, որից 9,5 միլիոնը գտնվում է ԿԺԴՌ-ում։

Իմպերիալիստական ագրեսիայի հետևանքով հսկայական վնաս է հասցվել ԿԺԴՌ-ի տնտեսությանը։ Ոչնչացվել են շատ քաղաք-

ներ ու գյուղեր, ավերվել է մոտ 9 հազար արդյունաբերական ձեռնարկություն և բնակելի տուն՝ 28 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ, 5 հազար ուսումնական հաստատություն, ավելի քան 1.000 հիվանդանոց, 263 թատրոն ու կինո և այլն։ Պատերազմից լուրջ կերպով տուժել է նաև գյուղատնտեսությունը։ Հացահատիկի արտադրությունը 1953 թվականին կազմել է 1949 թվականի մակարդակի 88 տոկոսը միայն։

Կորեական ժողովուրդը իր Աշխատանքային պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ կատարելով ետպատերազմյան եռամյա պլանը արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացրել է 2,8 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 4 անգամ, իսկ սպառման ապրանքներինը՝ 2,1 անգամ։ Նախատեսված է առաջին հնգամյա պլանով մետաղի արտադրությունը 1961 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, ավելացնել 2,3 անգամ։

Գյուղում վերջնականապես ամրապնդվել է տնտեսության սոցիալիստական սեկտորը։ 1947 թվականի վերջին ամբողջ գյուղական տնտեսությունների 95,6 տոկոսը ընդգրկված էր կոոպերատիվներում։



Լուրջ ուշադրություն է դարձվում աշխատավորության դրությունը բարելավելու վրա։ Ետպատերազմյան ժամանակաշրջանում կառուցվել են 13,4 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Կառուցվել, վերակառուցվել և ընդլայնվել են 5.455 ուսումնական հաստատություն։ Դպրոցներում ներկայումս սովորում են մոտ 2 միլիոն երեխա։ Երկրում գործում է 17 բուհ և 127 տեխնիկում։ 1958 թվականին 10 տոկոսով բարձրացվել է բանվոր-ծառայողների աշխատավարձը։ Իջեցվել են մի շարք սննդամթերքների գները։ Ազգային եկամուտը 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 2 անգամ։

Կորեայի Աշխատանքային պարտիան, որը կազմավորվել է 1949 թվականի հունիսին, ներկայումս իր շարքերում ունի 1 միլիոն 164 հազար 945 անդամ։

Այն ժամանակ, երբ Հյուսիսային Կորեայի աշխատավորները իրենց հարազատ պարտիայի ղեկավարությամբ կերտում են իրենց լուսաշող ու երջանիկ ապագան, Հարավային Կորեայի աշխատավորները հեծում են ամերիկյան զավթիչների և Լի Սին Մանի կլիկի գարշապարի տակ։ Թե որքան

ծանր է Հարավային Կորեայի աշխատավորների դրությունը, բավական է ասել, որ այսօր այնտեղ ավելի քան 6 միլիոն գործազուրկներ տառապում են կարիքի և քաղցի ճիրաններում։ Հուսահատությունը հասած շատ մարդիկ ինքնասպանությամբ վերջ են դնում իրենց կյանքին։ Անցյալ տարի 10 ամսվա ընթացքում միայն Սեուլում արձանագրված է ինքնասպանության 285 դեպք, իսկ 820 մարդ էլ մահացել են սովից։

Նախանձելի չէ նաև աշխատող բանվորների վիճակը։ Ձեռնարկատերերը ստիպում են նրանց աշխատել օրական 12—16 ժամ։ Բանվորները ստանում են այնքան ցածր աշխատավարձ, որ այն չի բավարարում նույնիսկ կյանքի մինիմում պահանջը։ Առանձնապես ծանր է կանանց վիճակը։ Նույնատեսակ աշխատանքի համար նրանք երկու անգամ ավելի ցածր աշխատավարձ են ստանում, քան տղամարդիկ։ Հազարավոր կանայք զրկված լինելով գոյության միջոցներից, ստիպված իրենց վաճառում են հասարակաց տներին։

Սակայն, չնայած տիրող դաժան տեռորին ու հալածանքներին, Հարավային Կորեայի աշխատավորները շարունակում են իրենց պայքարը ամերիկյան իմպերիալիստների և



նրանց հլու կամակատար՝ Լի Սին Մանի ռեժիմի դեմ։

«Կեննյան սինմուն» թերթի հաղորդագրության համաձայն, այս տարվա փետրվարին Կյոնան նահանգի Մունգենի ածխահորերի 160 բանվորներ գրավելով ընկերության գրասենյակը պահանջել են անհապաղ վճարել հետ պահված աշխատավարձը։ Հանքերի դիրեկցիան ստիպված է եղել բավարարել բանվորների պահանջը։ Մեկ այլ օրինակ։ Ինչպես հաղորդում է հարավկորեական «Տոննա իլբո» թերթը, տեքստիլ արդյունաբերության բանվորները վճռական բողոք են հայտնել լիսինմանական կլիկի կողմից նրանց վզին վաթաթված ստրկական ռեժիմի դեմ և պահանջել են մտցնել 8-ժամյա բանվորական օր։ Հարավային Կորեայի 20 տեքստիլ գործարանների ավելի քան 36 հազար բանվորներ պահանջել են 12-ժամյա երկհերթ աշխատանքի փոխարեն մտցնել 8-ժամյա երեք հերթի աշխատանքային օր։

Սակայն շատ հեռու չէ այն օրը, երբ Հարավային Կորեայի աշխատավորները կթոթափեն ստրկության ծանր շղթաները և միավորվելով իրենց հյուսիսային եղբայրների հետ, միացյալ ուժերով կկառուցեն իրենց երջանիկ ապագան՝ կոմունիզմը։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ*

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—289, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, *1959 թվականի հունիսի 29-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 3-ի և 4-ի համարներում։*

Արդյունաբերության ու շինարարության մեջ տեխնիկական առաջադիմությունն արագացնելու վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կատարման ասպարեզում պարտիական ու սովետական կազմակերպությունների և ժողովրդական տնտեսության խորհուրդների աշխատանքի մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1959 թվականի հունիսի 29-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 1-ի համարում։*

Արագացնել մեր առաջընթաց քայլը դեպի կոմու-



նիզմ, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 4-ի համարում։*

## *2. ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄՆ ՈՒ ԱՎՏՈՄԱՏԱՑՈՒՄԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական առաջադիմության հիման վրա անշեղորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումում արտասանած ճառից, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 3-ի համարում։*

Արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման հիմքն է, *ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 1-ի համարում։*

Գլխավորը կազմակերպչական աշխատանքն է, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 7-ի համարում։*

## *3. ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

Գրականություն

**Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մրցության կազմակերպումը,** *Երկեր, հատոր 27, էջ 310—315, Հայպետհրատ, 1951։*

**Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը,** *Հայպետհրատ, 1959։*

Կոնկրետ գործիմացությամբ ղեկավարել մասսաների մրցությունը *«Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 10-ի առաջնորդողը։*

4. *ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ ԳՅՈՒՏԱՐԱՐՈՒԹՅԱՆՆ ՈՒ ՆՈՐԱՐԱՐՈՒԹՅԱՆԸ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Վճռականորեն պայքարել կոնսերվատիզմի դեմ, շարունակ կատարելագործել տեխնիկան, ՍՄԿՊ հունիսյան պլենումում արտասանած ճառից, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 3-ի համարում։*

Բարձրացնել գիտության դերը տեխնիկական առաջադիմության գործում, արագացնել գիտության նվաճումների արմատավորումը արտադրության մեջ, ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումից, *5-րդ մաս, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 1-ի համարում։*

Ռացիոնալիզատորներին և գյուտարարներին լայն ճանապարհ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 9-ի համարում։*

5. *ԱՎԵԼԻ ՇԱՏ ԲԱՄԲԱԿ ՄԵՐ ԵՐԿՐԻՆ*

Գրականություն

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը բամբակագործության աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումն ապահովելու միջոցառում



ների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 5-ի համարում։*

6. *ՀԱՅԱՀԱՏԻԿԻ ԲԵՐՔԸ ՀԱՎԱՔԵՆՔ ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՌԱՆՑ ԿՈՐՍՏԻ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— *Հացահատիկային տնտեսությունը գյուղատնտեսական ամբողջ արտադրության հիմքն է, ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, էջ 81—88, 1956։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության հետագա վերելքը, *ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, էջ 38—58, 1959։*

7. *ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ԱՊԱՀՈՎԵՆՔ ՀՅՈՒԹԱԼԻ ԿԵՐՈՎ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ընդլայնել կերի արտադրությունը, ՍՄԿՊ Հունվարյան պլենումում անասնաբուծական մթերքների արտադրությունը ավելացնելու մասին զեկուցումից, *տված 1955 թվականի հունվարի 25-ին, էջ 47—56, Հայպետհրատ, 1955։*

Բանաձև Հայաստանի Կոմունիստական պարտիայի արտահերթ XX համագումարի, *Հայպետհրատ, 1959։*

8. *ՇԻՆԱՐԱՐԻ ՕՐԸ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ ՍՍՀՄ ժողովրդական տընտեսության նվաճումների ցուցահանդեսի բացմանը,



*տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունիսի 18-ի համարում:*

Արդյունաբերության ու շինարարության մեջ տեխնիկական առաջադիմությունն արագացնելու վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կատարման ասպարեզում պարտիական ու սովետական կազմակերպությունների և ժողովրդական տնտեսության խորհուրդների աշխատանքի մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 1-ի համարում:*

Բանաձև Հայաստանի Կոմունիստական պարտիայի արտահերթ XX համագումարի, առանձին բրոշյուր, *Հայպետհրատ, 1959:*

### *9. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՆԽՈՐՏԱԿԵԼԻ Է*

Գրականություն

Կոմյունիկե Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի պարտիական-կառավարական պատվիրակության բարեկամության այցով Սովետական Միությունում գտնվելու մասին, *տպագրված «Ս .Հ.»-ի 1959 թվականի հունիսի 21-ի համարում:*

Սովետական Միության և Ալբանիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի պարտիական-կառավարական պատվիրակությունների համատեղ հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունիսի 2-ի համարում:*

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

